Отдел пропаганды и агитации ЦК КП (б) Армении

**Блокнот Агитатора**

№ 16 (94)

Գինը 25 կոպ.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՑԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 17 (95)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 17 (95)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

1. ՏԱՍՆՎԵՑ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԵԾ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ . . . . . . . 3
2. ԲԵՍԱՐԱԲԻԱՅԻ ԵՎ ԲՈՒԿՈՎԻՆԱՅԻ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՄԱՍԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ. ՄՈԼԴԱՎԱԿԱՆ ՍՍՌ . . 5
3. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԸ ՄԵՐՁԲԱԼԹԻԿԱՅՈՒՄ . . . . 18
   ա) ԼԻՏՎԱԿԱՆ ՍՍՌ . . . . . . 21
   բ) ԼԱՏՎԻԱԿԱՆ ՍՍՌ . . . . . 30
   գ) ԷՍՏՈՆԱԿԱՆ ՍՍՌ . . . . . 44
4. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ . . 58

# ՏԱՍՆՎԵՑ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԵԾ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ

ՍՍՌ Միության Գերագույն Սովետի յոթերորդ սեսիան օրենքներ ընդունեց Մոլդավական ՍՍՌ կազմելու և Բուկովինայի հյուսիսային մասը, Բեսարաբիայի Խոտինյան, Ակկերմանի ու Իզմայիլսկի գավառները Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի կազմի մեջ մտցնելու մասին։ Սեսիան հաստատեց Լիտվական ՍՍՌ-ն, Լատվիական ՍՍՌ-ն և Էստոնական ՍՍՌ-ն Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ ընդունելու վերաբերյալ օրենքները։

Սովետական ժողովուրդն ուրախությամբ իր եղբայրական ընտանիքի մեջ ընդունեց չորս նոր միութենական ռեսպուբլիկաները— Մոլդավականը, Լիտվականը, Լատվիականը և Էստոնականը։ Հենց միայն այն

փաստը, որ 10 միլիոն բանվոր և գյուղացի ընդմիշտ ազատագրվեցին ռումինական բոյարների, մերձբալթյան կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունից և մեզ հետ միասին սոցիալիզմ են կառուցելու. ՍՍՌՄ-ի արտաքին քաղաքականության հիանալի հաղթանակների բավականաչափ համոզիչ վկայություն է:

Սովետական Միության արտաքին քաղաքականության հաջողություններն առավել ևս նշանակալի են այն բանի համար, որ այս ամենին մենք հասանք խաղաղ ճանապարհով:

Ստալինյան իմաստուն արտաքին քաղաքականությունը, պատերազմից պահպանեց Սովետական Միությունը, բարձրացրեց նրա տեսակարար կշիռը, ավելացրեց արտասահմանյան երկրների աշխատավորության բարեկամական վստահությունը նրա նկատմամբ:

---



## ԲԵՍԱՐԱԲԻԱՅԻ ՅԵՎ ԲՈՒԿՈՎԻՆԱՅԻ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՄԱՍԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ ՄՈԼԴԱՎԱԿԱՆ ՍՍՌ

(Տեղեկանք)

1940 թվի հունիսի 26-ի օրը Բեսարաբիայի և Բուկովինայի հյուսիսային մասի ժողովուրդների պատմության մեջ կմնի որպես ռումինական բոյարների ճնշումից նրանց ազատագրման պատմական մեծ օր:

Այդ օրը ընկեր Մոլոտովը Մոսկվայի ռումինական դեսպանին պահանջ ներկայացրեց Բեսարաբիան Սովետական Միությանը վերադարձնելու. մասին: Միաժամանակ սովետական կառավարությունը ռումինական արքայական կառավարությունից պահանջեց Սովետական Միությանը հանձնել Բուկովինայի հյուսիսային մասը, որի բնակչության հսկայական մեծամասնությունը կազմում են ուկրաինացիները, այսինքն մի ժողովուրդ, որը Սովետական Միության հետ կապված է ինչպես պատ-

մական ճակատագրի ընդհանրությամբ, այնպես էլ լեզվի և ազգային կազմի ընդհանրությամբ: «... Բուկովինայի հյուսիսային մասի հանձնումը Սովետական Միությանը,— ասված է այդ նույն պահանջագրի մեջ,— կարող է, ճիշտ է՝ լոկ աննշան չափով, հանդիսանալ որպես մի միջոց հատուցելու այն վիթխարի վնասը, որ հասցվել է Սովետական Միությանը և Բեսարաբիայի ազգաբնակչությանը Ռումինիայի 22-ամյա տիրապետությամբ Բեսարաբիայում»:

Ռումինական կառավարությունը, կոնֆլիկտի խաղաղ լուծումը ձգձգելու մի քանի անհաջող փորձերից հետո, ստիպված եղավ վերջ ի վերջո բավարարել սովետական իշխանության արդարացի պահանջները: Հունիսի 28-ի ցերեկվա ուղիղ ժամը 2-ին Կարմիր բանակի զորամասերն անցան ռումինական սահմանը, հանդիպելով Բեսարաբիայի և Բուկովինայի հյուսիսային մասի ազատագրվող գյուղերի ու քաղաքների աշխատավոր ազգաբնակչության խանդավառ ու բերկրալի դիմավորությանը:

Բեսարաբիան Ռուսաստանի վաղեմի տերիտորիան է: Նախքան 1918 թվի հունվա-



րին Ռումինիայի կողմից բռնի կերպով զավթելը, դա ռուսական մի նահանգ էր, որը գտնվում էր Դնեստր, Պրուտ գետերի և Դանուբի ստորին հոսանքի միջև: Բեսարաբիայի հարավային սահմանը Սև ծովն է:

Բեսարաբիան ռումինական զորքերի կողմից օկուպացիայի ենթարկվեց այն ժամանակ, երբ երիտասարդ սովետական ռեսպուբլիկան դեռևս թույլ էր ռազմական տեսակետից: Օգտվելով արեւմտյան իմպերիալիստների աջակցությունից, ռումինական զորքերը ներխուժեցին Բեսարաբիա և վերականգնեցին կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը: Օկուպացիայի առաջին իսկ օրերից սկսվեցին անողոք դատաստանները: Սովետական երկրի նկատմամբ ամենափոքրիկ իսկ համակրանք ցուցաբերելու համար խոշտանգում էին և գնդակահարում:

1918 թվի մարտի 27-ին տեղի ունեցավ Բեսարաբիայի «կամավոր» միացման կոմեդիան, այսպես կոչված բեսարաբական երկրամասային պարլամենտի՝ «սֆատուլ ցերի»-ի օգտին քվեարկելու կոմեդիան: Այդ արվեց նրա համար, որպեսզի «իրավաբանական բազա» ստեղծվի, Անտանտայի տերությունների, անգլիական և ֆրանսիական

իմպերիալիստների համար հեշտացվի Բեսարաբիայի նկատմամբ Ռումինիայի «օրինական իրավունքի» ճանաչումը:

Սովետական Միությունը երբեք չհաշտվեց Բեսարաբիայի զավթման փաստի հետ, որի մասին ՍՍՌՄ-ի կառավարությունը շատ անգամ բացահայտ կերպով հայտարարել է ամբողջ աշխարհի առաջ:

Նույնքան քիչ իրավունքներ ունեին ռումինական բոյարները նաև Բուկովինայի նկատմամբ: Համաձայն Սեն-Ժերմենի պայմանագրի, որը կնքվեց առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմից հետո, 1919 թվի սեպտեմբերին, քայքայված Ավստրո-Հունգարական կայսրությունից Ռումինիային անցավ Բուկովինայի հարավային մասը միայն: Բայց դեռևս 1918 թվի նոյեմբերի 12-ին ռումինական զորքերը բռնի կերպով գրավեցին նաև Հյուսիսային Բուկովինան, հակառակ նրա ազգաբնակչության կամքին, որը պահանջում էր միանալ Սովետական Ուկրաինային: Օկուպացիայից 9 օր առաջ Բուկովինայի գլխավոր քաղաք Չերնովիցում կայացավ բանվորների և գյուղացիների վիթխարի միտինգ, որը հավաքվել էր երկրի բոլոր ծայրերից և պահանջում էր վերամիացում



մնացած ուկրաինական ժողովրդի հետ: Զինյալ ռումինական զավթողների գործողությունների բացահայտ ապօրինությունը, Անտանտան սանկցիա տվեց նաև այդ բռնությանը:

***

Բեսարաբիան 44,5 հազար քառակուսի կիլոմետր տերիտորիայով և 3·200 հազար ազգաբնակչությամբ երկիր է: Ըստ 1897 թվի ռուսական վիճակագրության տվյալների, Բեսարաբիայի բնակչությունն ըստ ազգության բաղկացած էր 76 % ուկրաինացիներից, մոլդավացիներից և ռուսներից, 12 % հրեաներից, 5 % բուլղարներից և այլն:

Նախքան ռումինական օկուպացիան Բեսարաբիան հարստագույն հողագործական ռայոն էր: Այստեղ զարգացած են հացահատիկային կուլտուրաները (գլխավոր կուլտուրաները՝ ցորեն, գարի, եգիպտացորեն, արևածաղիկ), խաղողագործությունը և այգեգործությունը: Բեսարաբիայի հողը չափազանց բարեբեր է, այնտեղ հնարավոր է այնպիսի արժեքավոր կուլտուրաների մշակությունը, ինչպիսիք են խաղողն ու ծխախոտը: Խաղողի և մրգի այգիները

բռնում են մոտ 150 հազար հեկտար տարածություն:

Բեսարաբիայի արդյունաբերությունը թույլ է զարգացած: Արդյունաբերության հիմնական ճյուղերն են՝ ալրաղացայինը, յուղագործականը, գինեգործականը:

Նախքան օկուպացիան Բեսարաբիան տնտեսապես ամենասերտ կերպով կապված էր մնացած ամբողջ Ռուսաստանի հետ: Բեսարաբիայից արտահանվող գյուղատնտեսական մթերքների հիմնական մասսան— 80 %-ը— ուղարկվում էր Ռուսաստանի վրայով և միայն 20 %-ը՝ Ռումինիայի վրայով: Ներմուծումը 97 %-ով գալիս էր Ռուսաստանից և միայն 3 %-ով՝ Ռումինիայից: Ռուսաստանը Բեսարաբիային տալիս էր չուգուն, պողպատ, մեքենաներ, ածուխ, նավթ, մանուֆակտուրա: Այսպիսով՝ հենց միայն Սովետական Ռուսաստանից Բեսարաբիան բռնի կերպով պոկելու փաստը պետք է խիստ կործանարար կերպով անդրադառնար այդ երկրամասի ժողովրդական տնտեսության վրա:

Օկուպանտների գիշատիչ քաղաքականությունը Բեսարաբիայի գյուղատնտեսությունը հասցրեց լիակատար քայքայման վիճակի: Ցանքատարածությունը պակա-



սեց, հողը տարեց-տարի ավելի ու ավելի մեծ չափերով էր անցնում կալվածատերերի և հոգևորականության ձեռքը: Բեսարաբիայի հողի քառորդ մասը գտնվում էր մի բուռը խոշոր հողատերերի ձեռքում: Ավելի քան 500 հազար գյուղացիներ հողազուրկ էին: Գյուղացիներին այլ բան չէր մնում, եթե ոչ սարկանալ, հողը վարձել ամենածանր պայմաններով, կամ չնչին վարձատրությամբ բատրակություն անել կալվածատիրական տնտեսություններում: Հողը մշակվում էր ամենահետամնաց եղանակներով: Ուժից վեր հարկերով ծանրաբեռնված գյուղացիները քայքայվում և աղքատանում էին:

Աստիճանաբար, տարեց-տարի, ընկնում էր նաև Բեսարաբիայի արդյունաբերությունը: Նրա ալրաղացային, յուղագործական և գինեգործական ձեռնարկությունները վերջին ժամանակներս աշխատում էին իրենց արտադրական կարողության 20—30 %-ի չափով: Գարեջրի և շաքարի գործարանների մեծ մասը փակվել էր:

Աշխատանքային օրը 12—14 ժամ էր, աշխատավարձը միջին հաշվով չէր անցնում ամսական 20 ռուբլուց:

Աշխատավորների ողբալի դրությունը

Բեսարաբիայում ստիպված էին խոստովանել նաև Ռումինիայի իշխող դասակարգերի ներկայացուցիչները: Ահա թե ինչ էր ասում 1932 թվին այն ժամանակվա ֆինանսների մինիստր Արժետոյանուն.

«Բեսարաբիայում չկա կոյուղի ունեցող ո՛չ մի քաղաք, բացի Քիշնևից, ո՛չ մի տեղ չկան սալահատակված փողոցներ, իսկ էլեկտրական լուսավորությունը պերճանք է: Մինչև այժմ ոչինչ չի արվել տնտեսական և կուլտուրական առաջադիմության համար»:

Բեսարաբիայի չափահաս բնակչության մոտ 80 %-ն անգրագետ է:

Ռումինական օկուպացիայի առաջին 14 տարում Բեսարաբիայի գլխավոր քաղաք Քիշնևի ազգաբնակչությունը կրճատվեց մեկ երրորդական մասով. Ներկայումս բնակչությունը կազմում է ավելի քան 115 հազար հոգի:

Ահա թե ինչ էր գրում 1939 թվի հունիսին ռումինական բուրժուական «Ռոմանիա» թերթը Բեսարաբիայի դրության մասին.

«Բեսարաբական գյուղացիների աղքատության հետևանքով ամեն տարի գյուղում 94·699 նորածիններից մեռնում են 59·131



հոգի: 1937 թվի վիճակագրությունը ցույց է տալիս տուբերկուլյոզով հիվանդ 37·334 հոգի, տրախոմայով՝ 17·451 և մալարիայով՝ 90 հազար հիվանդ: Աղքատության և առողջապահական պայմանների բացակայության պատճառով լայն տարածված են վարակիչ հիվանդությունները»:

Բեսարաբիայի աշխատավորներն օկուպացիայի առաջին իսկ օրերից անդուլ պայքար են մղել զավթողների դեմ: Անգամ ռումինական ներքին գործերի մինիստրության վիճակագրության համաձայն, մինչև 1924 թվականը Բեսարաբիայում տեղի է ունեցել 153 ապստամբություն: Նրանցից ամենախոշորները եղել են՝ 1919 թվի ապստամբությունը Սորոկյան ու Խոտինյան գավառներում և 1924 թվի ապստամբությունը Տատարբունարի ռայոնում: Ռումինական պահնորդական բաժինը (սիգուրանցա) և զորամասերը դաժանաբար դատաստան տեսան ապստամբների հետ: Սորոկյան և Խոտինյան գավառներում գնդակահարվեցին ավելի քան 5 հազար հոգի, Տատարբունարում՝ մի քանի հազար հոգի: Հարյուրավոր գյուղեր հրկիզվեցին և թալանվեցին: Ռումինական օկուպացիայի հենց միայն առաջին 10 տարում առանց դատի և զինվորական դա-

ատյանների դատավճիռներով սպանվել են ավելի քան 30 հազար հոգի:

Օկուպացիայի առաջին 10 տարվա ընթացքում ավելի քան 300 հազար հոգի փախան ՍՍՌՄ., ԱՄՆ և այլ երկրներ:

Այժմ Բեսարաբիայի աշխատավորները, ընդմիշտ ազատագրվելով ռումինական բոյարների և կապիտալիստների ճնշումից, մտան Սովետական Միության ազատ ժողովուրդների միասնական ընտանիքի մեջ: Սոցիալիզմի մեծ երկրի բոլոր ժողովուրդների հետ միասին նրանք համարձակորեն առաջ կգնան դեպի նորանոր հաղթանակներ, իրենք կկառուցեն իրենց նոր, երջանիկ կյանքը:

***

Բուկովինան գտնվում է Ռումինիայի հյուսիս-արևելյան մասում: Հյուսիս-արևմուտքից և հյուսիսից նա սահմանակից է ՍՍՌ Միության, արևելքից՝ Բեսարաբիային, հարավից՝ Ռումինիային: Հյուսիսային Բուկովինայի տարածությունը հավասար է 6 հազար քառակուսի կիլոմետրի, նրա ազգաբնակչությունն անցնում է 500 հազարից:

Բուկովինայի հյուսիսային մասում բնակ-



վում են հիմնականում ուկրաինացիները: Լեզվով և կենցաղով նրանք ոչնչով չեն տարբերվում Պոդոլիայի և Վոլինայի ուկրաինացիներից:

Բուկովինայի հյուսիսային մասում զարգացած է հողագործությունը: Գլխավոր հացահատիկային կուլտուրաներն են՝ եգիպտացորենը, հաճարը, գարին: Կարտոֆիլը բռնում է ամբողջ ցանքատարածության 20 %-ը:

67 % չքավոր և միջակ գյուղացիական տնտեսությունները ունեին միայն հողի 18 %-ը, իսկ մնացած ամբողջ հողը գտնվում էր կալվածատերերի և կուլակության ձեռքում: Ջերնովից քաղաքից բանվոր ընկ. Միխալչուկը ՍՍՌՄ Գերագույն Սովետի Յոթերորդ սեսիայում արտասանած ճառում բերեց ցնցող փաստեր: Պրիլիպչա-Լուկա գյուղում 855 գյուղացիական տնտեսություն ունեին միայն 163 հեկտար հող, իսկ այդ գյուղի երեք կալվածատեր ունեին 526 հեկտար լավագույն հող:

Կամարովցի գյուղում 785 գյուղացիական տնտեսություն ունեին միայն 357 հեկտար հող, իսկ այդ գյուղից չորս կալվածատեր՝ 4061 հեկտար:

Ավելի լավ չէր բանվորների վիճակը:

Աշխատանքային օրվա տևողությունը առնվազն 12—13 ժամ էր, իսկ փռերում և երշիկի գործարաններում չնչին աշխատավարձով աշխատում էին օրական մինչև 18 ժամ:

Հյուսիսային Բուկովինայի արդյունաբերությունը հիմնականում կենտրոնացած էր Չեռնովիցում, մարզի այդ գլխավոր քաղաքում, որը գտնվում է Պրուտ գետի վրա և ունի մոտ 110 հազար բնակիչ: Այնտեղ գտնվում են գյուղատնտեսական մեքենաշինության և գյուղատնտեսական մթերքների վերամշակման գործարանները, ինչպես նաև չուգունի ձուլման գործարանը: Տեքստիլ և տրիկոտաժի ֆաբրիկաները վերջին տարիներս համարյա բոլորովին չէին աշխատում վաճառահանման բացակայության պատճառով:

Ռումինական կալվածատերերի և կապիտալիստների տիրապետության հետևանքով ամբողջ երկրամասի էկոնոմիկան անկման վիճակի էր հասել: Աշխատավորական մասսաները սիստեմատիկ կերպով քաղցած էին մնում: Գործազրկությունը հսկայական չափեր էր ընդունել: Գյուղացիներին քշում էին հողերից, նրանց փոխարեն ռումինական բոյարները բերում էին այսպես կոչ-



ված կոլոնիստներին, որոնք ռումինական կալվածատերերի և կապիտալիստների հնազանդ և «բարեհույս» կամակատարներն էին:

Բուկովինայի ուկրաինական ազգաբնակչությունը առանձնապես ուժեղ ճնշման տակ էր գտնվում: Չկային ո՛չ ուկրաինական թերթեր, ո՛չ դպրոցներ կամ այլ ուկրաինական կուլտուրական հիմնարկներ. Նրանք բոլորը փակված էին ռումինական «ցիվիլիզատորների» կողմից:

Բուկովինայի աշխատավորները, չնայած ռումինական ժանդարմների հալածանքներին, չարունակ իրենց սերն ու համակրանքն էին արտահայտում դեպի Սովետական մեծ Միությունը: Նրանք հավատացած էին, որ Սովետական Միության ժողովուրդները նրանց օգնության ձեռք կըպարզեն: Այդ նվիրական երազն իրականացավ:

---



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԸ ՄԵՐՁԲԱԼԹԻԿԱՅՈՒՄ

1940 *թվի հուլիսի* 21*-ը ամենաերջանիկ և բերկրալի օրն է Մերձբալթիկայի աշխատավորների համար: Այդ օրը Լատվիայում, Լիտվայում և Էստոնիայում իշխանությունն անցավ ժողովրդի ձեռքը: Աշխատավորության կողմից ընտրված ժողովրդական ներկայացուցչությունները որոշում ընդունեցին Լատվիայի, Լիտվայի ու Էստոնիայի տերիտորիայի վրա սովետական իշխանություն հաստատելու և սովետական նոր ռեսպուբլիկաները ՍՍՌՄ-ի կազմի մեջ մտցնելու մասին:*

*Մերձբալթյան երկրների պատմական ճակատագիրը վաղուց կապված է ՍՍՌՄ-ում բնակվող ժողովուրդների զարգացման հետ: Շատ տասնամյակների ընթացքում Լատվիայի, Լիտվայի և Էստոնիայի բանվորները ռուսական բանվորների հետ միասին հերոսաբար պայքարել են ինքնակալության*



*դեմ, կալվածատերերի և բուրժուազիայի իշխանության դեմ: Եղբայրական կապերով են նրանք իրենց բախտը կապել մեր երկրի բանվորների և գյուղացիների հետ:*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան ազատության ճանապարհ բաց արավ ցարական Ռուսաստանի բոլոր ժողովուրդների առաջ: Սակայն, Մերձբալթյան երկրների բուրժուազիան Անտանտայի օգնությամբ բանվոր դասակարգի ձեռքից խլեց այդ հաղթանակը: Լիտվայի, Լատվիայի և Էստոնիայի բանվորներն ու գյուղացիներն այն ժամանակ բավականին ուժ չունեցին նվաճած իշխանությունը պահել կարողանալու համար:*

*Սովետական մեծ Միության եղբայրական օգնությամբ Մերձբալթյան երկրների բանվորներն ու գյուղացիները հնարավորություն ստացան ազատ կերպով արտահայտելու իրենց կամքը: Լիտվայի, Լատվիայի և Էստոնիայի ժողովրդական մասսաները միաձայն հայտարարեցին՝ «պահանջում ենք հաստատել սովետական իշխանություն, մտնել ՍՍՌ Միության մեջ»: «Նոր կյանքը— դա սովետական կյանքն է. նոր իշխանությունը՝ միայն սովետական իշխանությունը»:*

Մերձբալթյան երկրների աշխատավորները այլ որոշում չէին էլ կարող ընդունել: Սովետական Միության փորձի հիման վրա նրանք համոզվեցին, որ միայն սովետական իշխանությունը կարող է խաղաղություն և ազատություն, հաց և աշխատանք ապահովել աշխատավորության համար, ժողովուրդներին ազատել շահագործումից, կարիքից և իրավազրկությունից:

Մերձբալթյան երկրների աշխատավոր մասսաների կամքը կատարված է: Սովետների դրոշակը հպարտ ծածանվում է Լիտվայի, Լատվիայի և Էստոնիայի վրա:

Սովետական Միությունը կօգնի սովետական երիտասարդ ռեսպուբլիկաներին դուրս գալու սոցիալիզմի լայն ճանապարհը: Լատվիայի, Լիտվայի և Էստոնիայի մուտքը Սովետական Միության մեջ կապահովի նրանց արագ տնտեսական վերելքը և ազգային կուլտուրայի բազմակողմանի ծաղկումը: «... Սովետական Միության մեջ մտնելով՝ նրանց ուժերը կբազմապատկվեն շատ անգամով, նրանց անվտանգությունը կամրապնդվի և, դրա հետ մեկտեղ, է՛լ ավելի կաճի Սովետական Մեծ Միության հզորությունը» (Վ. Մոլոտով):



## ԼԻՏՎԱԿԱՆ ՍՍՌ

### (Տեղեկանք)

Լիտվան ամենահարավայինն է Մերձբալթյան ռեսպուբլիկաներից, որոնք պետական անկախություն ստացան Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի հաղթանակի հետևանքով:

Չորս հարյուրամյակի ընթացքում, սկըսած XIV դարի վերջից մինչև XVIII դարի վերջը, Լիտվան փաստորեն գտնվում էր պանական Լեհաստանի տիրապետության տակ:

Չորս հարյուրամյակի ընթացքում լեհական շլյախտան հալածում էր լիտվական ազգային շարժումը, ոտնակոխ էր անում լիտվացիների ամենատարրական իրավունքները, խեղդում էր նրանց ազգային զգացմունքների ամենափոքրիկ իսկ արտահայտումը:

Լիտվական ժողովրդի վրա ծանր բեռով էին ընկած այն բազմաթիվ պատերազմները, որ վարում էր պանական Լեհաստանը:

1815 թվին Լիտվան միացվեց Ռուսաստանին, որի կազմի մեջ էլ գտնվում էր մինչև 1915 թիվը, երբ նրա տերիտորիան օկու-

պացիայի ենթարկվեց գերմանական զորքերի կողմից։

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի ազդեցության տակ Լիտվայում ուժեղացավ ռևոլյուցիոն շարժումը, որն առանձնապես աճեց 1918 թվի վերջերին։

Կայսերական միապետության խորտակումից հետո լիտվական ժողովուրդը բացահայտ կերպով հանդես եկավ օկուպացիոն զորքերը երկրից վտարելու և Լիտվայում սովետական իշխանություն հաստատելու ուղին։

1918 թվի դեկտեմբերի կեսերին Վիլնոյում և Լիտվայի այլ քաղաքներում հռչակվեց բանվորական, գյուղացիական և զինվորական դեպուտատների Սովետների իշխանություն։ Կազմվեց ժամանակավոր բանվորա-գյուղացիական կառավարություն։

1918 թվի դեկտեմբերի 16-ին ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարությունը հռչակեց Լիտվական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա։ 1919 թվի փետրվարին տեղի ունեցավ միացումը Բելոռուսական Սովետական Ռեսպուբլիկայի հետ։ Ծագում առավ Լիտվայի և Բելոռուսիայի Սովետական Սոցիալիստական Ռես-



պուբլիկան։ Սակայն, լիտվական բուրժուազիան, սոցիալ-դավաճանների աջակցությամբ և իմպերիալիստական տերությունների օգնությամբ, խեղդեց երիտասարդ սովետական ռեսպուբլիկան։ Իշխանությունն անցավ բուրժուազիայի և կալվածատերերի ձեռքը։

Անգլո-Ֆրանսիական ռազմական բլոկը բոլոր ջանքերը գործադրեց, որպեսզի դարձնի Մերձբալթյան պլացդարմը ՍՍՌ Միության վրա հարձակվելու համար։

Ծավալված երկրորդ իմպերիալիստական պատերազմի պայմաններում Սովետական Միությունն անհրաժեշտ միջոցների ձեռնարկեց իր հյուսիս-արևմտյան սահմանների անվտանգությունն ապահովելու համար։

1939 թվի հոկտեմբերի 10-ին ՍՍՌՄ-ի և Լիտվայի միջև կնքվեց փոխադարձ օգնության պակտ։ Սովետական Միության կողմից Վիլնոն և Վիլնոյի մարզը Լիտվական ռեսպուբլիկային հանձնելը ցույց տվեց ամբողջ աշխարհին, որ միայն ՍՍՌՄ-ն իրոք հոգում է լիտվական պետության ազգային անկախության և ինքնուրույնության պահպանման մասին։

Լիտվայում իշխանության գլուխը կանգնած պլուտոկրատական կլիկը փորձեց ամեն կերպ խանգարել Լիտվայի և ՍՍՌՄ-ի ժողովուրդների եղբայրական մերձեցմանը։ Նա բռնեց 1939 թվի հոկտեմբերի 10-ին Լիտվայի հետ կնքված պակտը վիժեցնելու ճանապարհը և լիտվական ժողովրդին դավաճանաբար մղում էր դեպի պատերազմի ճանապարհը։

Սովետական Միության օգնությամբ լիտվայի ժողովուրդը վռնդեց ատելի կառավարությանը, ջախջախեց հին ռեժիմի տիրապետությունը և իր ձեռքը վերցրեց իր հայրենիքի բախտը։ Լիտվան թևակոխեց նոր կյանքի շինարարության ուղին։



Լիտվան կազմվել էր Ռուսաստանի Կովնոյի նահանգից, Սուվալկի նահանգի մի մասից և Վիլնոյի ու Կուրլանդիայի նահանգների աննշան մասերից։

Լիտվական ՍՍՌ-ն գտնվում է Բալթիկ ծովի հարավ-արևելյան ափին։ Լիտվայի տերիտորիան 59.478 քառակուսի կիլոմետր է (բացի այն տերիտորիաներից, որոնք ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշմամբ հանձնըվեցին նրան և որոնք առաջ մտնում էին



Բելոռուսական ՍՍՌ-ի կազմի մեջ)։ Բնակիչների թիվը՝ 2.880 հազար հոգի է։ Նրանցից մոտ 85%-ը կազմում են լիտվացիները։ Բնակչության միջին խտությունը՝ 48 հոգի 1 քառակուսի կիլոմետրի վրա։ Ազգաբնակչության հսկայական մեծամասնությունն ապրում է գյուղերում, քաղաքային բնակչությունը կազմում է միայն 15%։

Լիտվական ՍՍՌ-ի կարևորագույն քաղաքն է հանդիսանում Լիտվայի հին մայրաքաղաք Վիլնոն։ Վիլնոն երկաթուղային խոշոր հանգույց է։ Վիլնոյով են անցնում Կաունասի, Շաուլյայի, Լիբավայի, Դվինսկի, Մինսկի երկաթուղիները։ 1910 թվին Վիլնոն ուներ 315 արդյունաբերական ձեռնարկություն։ Լեհերի կողմից գրավելուց հետո (1920 թ.) քաղաքի արդյունաբերությունն սկսեց պակասել։ Ներկայումս քաղաքում կան միայն մի քանի տասնյակ ձեռնարկություններ— սննդի, փայտամըշակման, տրիկոտաժի։ Վիլնոն կուլտուրական խոշոր կենտրոն է հանդիսանում։ Քաղաքն ունի մոտ 200 հազար բնակիչ։

1939 թվի հոկտեմբերին Վիլնոն և Վիլնոյի մարզը Սովետական Միության կողմից վերադարձվեցին Լիտվային։

Կաունասը (Կովնո) հնադարյան քաղաք է: Գտնվում է այնտեղ, ուր Վիլի գետը թափվում է Նեմանը: Նա այժմ էլ Լիտվայի ժամանակավոր մայրաքաղաքն է: Այստեղ կան մետաղամշակման գործարաններ, տեքստիլ, ծխախոտի և այլ ֆաբրիկաներ: Առ 1-ը հունվարի 1939 թվի Կաունասում հաշվվում էր մոտ 150 հազար բնակիչ:

Լիտվայի խոշոր քաղաքներն են հանդիսանում Շաուլյայը (31 հազար բնակիչ), Պանեվեժիսը (31 հազար բնակիչ): Այդ քաղաքներում կան փոքրիկ կաշեգործական, ալրաղացային, շաքարի և այլ ձեռնարկություններ:

Կլայպեդայից 18 կիլոմետր հեռու գտնվում է Լիտվայի միակ ծովային նավահանգիստը՝ Պալանգան: Նրանից դեպի հյուսիս, Սվենտայի գետաբերանում, կառուցվում է նոր նավահանգիստ:

Լիտվայի արդյունաբերությունը թույլ է զարգացած, գերակշռում են մանր, կիսատնայնագործական ձեռնարկությունները: 1939 թվի սկզբին Լիտվայի 1316 ձեռնարկություններում աշխատում էին 38 հազար հոգի, այսինքն՝ յուրաքանչյուր ձեռնարկությունում միջին հաշվով 30 բանվոր: Ամբողջ արտադրանքի մոտ 40%-ը տալիս



է սննդի արդյունաբերությունը. նրա մեջ զբաղված է բոլոր բանվորների 20%-ը:

Լիտվայի էկոնոմիկայում տիրապետում էր օտարերկրյա կապիտալը— բելգիականը, շվեդականը, անգլիականը, ամերիկականը:

Անողոք շահագործում, չնչին աշխատավարձ, գործազրկություն— այդպիսին էր լիտվական բանվորների վիճակը: Այս տարի միայն Կաունասում և Վիլնոյում արձանագրվել էին հազարավոր գործազուրկներ: Աշխատանքային օրը, որպես կանոն, տևում էր 12 ժամ, շոֆերներինը՝ 14 ժամ, բվացարարուհիներինը՝ 16 ժամ: Ձեռնարկություններում պահվում էին «սև մատյաններ», որոնց մեջ գրվում էին այն բանվորների անունները, որոնք համարձակվում էին պահանջել աշխատանքի պայմանների բարելավում կամ նույնիսկ կոմպենսացիա աշխատանքից արձակվելու դեպքում: Այդպիսի «սև մատյանում» մտցված բանվորներին այլևս ոչ մի աշխատանքի չէին ընդունում:

Լիտվան ագրարային երկիր է: Վարելահողերի տարածությունը 1938 թվին կազմում էր Լիտվայի տերիտորիայի կես մասը— 2743 հազար հեկտար: Մարգագետին-

ներն ու արոտավայրերը բռնում էին 1.149 հազար հեկտար:

Խուտորային սիստեմի խրախուսումը և կառավարության կողմից կուլակային ու կալվածատիրական տնտեսություններին ցույց տրվող ամեն տեսակի աջակցությունը հանգեցրել էին այն բանին, որ հողի ճնշող մասն ընկել էր կուլակների ու կալվածատերերի ձեռքը: Իսկ գյուղացիները խեղդվում էին հողազրկությունից և սակավահողությունից, անարդարացի հարկերից և տուգանքներից:

Նույնիսկ սմետոնյան վիճակագրության տվյալներով, կալվածատիրական և կուլակային տնտեսությունները կազմում էին 9,3 %, իսկ նրանց ձեռքումն էր գտնվում հողերի 52,7 տոկոսը: 0,2-ից մինչև 10 հեկտար հողաբաժին ունեցող գյուղացիական տնտեսությունները, որոնք կազմում էին 49%, իրենց օգտագործման համար ունեին հողերի 16,9%-ը միայն: 70 հազար գյուղացիական տնտեսություններ ունեին 132.568 հեկտար հող, մինչդեռ 624 խոշոր հողատերեր ունեին 143.527 հեկտար:

Երկրում մոլեգնում էր անողոք տեռորը, ոստիկանական վայրագ կամայականու-



թյունը: Համակենտրոնացման ճամբարները միշտ լեփ-լեցուն էին բանվորներով, գյուղացիներով, ինտելիգենտներով: Պրոֆմիությունները արգելված էին: Հարյուրավոր լիտվացի կոմունիստներ հյուծվում էին տաժանավայրերի բանտերում:

Ի պատասխան բացառիկ անգութ շահագործման՝ Լիտվայի բանվորները քանիցս դուրս եկան պայքարի: Կառուցող, մետաղագործ, էլեկտրամոնտյոր, կաշեգործ և այլ բանվորների գործադուլները հազարավորներ էին ընդգրկում: Լիտվայի կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ աշխատավոր մասսաները բազմիցս դուրս եկան կառավարող կլիկի ոճրագործ խմբերի դեմ:

1940 թվի հուլիսի 21-ը— Լիտվայում սովետական իշխանություն հռչակելու օրը — ընդմիշտ կմտնի պատմության մեջ որպես ամենամեծ և բերկրալի օրը:

Հիմա միայն, սովետական իշխանության օրով, ֆաբրիկաներն ու գործարանները, հողը և երկրի բոլոր հարստությունները դարձան ժողովրդի սեփականությունը:

«Այսպիսի օրեր,— գրում էր «Լիետուվոս ժինիոս» թերթը,— Լիտվան երբեք չէր

ապրել իր պատմության հարյուրամյակների ընթացքում։

Ապագայում մեզ մոտ ավելի շատ կլինեն բերկրալի օրեր, բայց հուլիսի 21-ը հիշողության մեջ կմնա առհավետ։ Այդ օրվա մասին ժողովուրդը երգեր կհյուսի»։

## ԼԱՏՎԻԱԿԱՆ ՍՍՌ

(Տեղեկանք)

Լատվիայի պատմությունը սերտորեն կապված է ամբողջ Մերձբալթիկայի պատմական ճակատագրի հետ։

Լիտվա-լատվիական ցեղերը Մերձբալթիկայում երևան են եկել VI—VII դարերում։ IX—XI դարերում Մերձբալթիկան դառնում է գերմանական, սկանդինավյան և սլավոն ցեղերի պայքարի առարկա։

Լատվիայի աշխարհագրական դիրքը, նրա չսառչող նավահանգիստները և կարևոր ստրատեգիական դիրքը պատճառ են դարձել նրա նկատմամբ եվրոպական տերությունների հսկայական հետաքրքրության։ 1561 թվին Լեհաստանը գրավեց Լատվիան, 1629 թվին՝ Շվեդիան։

1700 թվին սկսվեց այսպես կոչված Հյուսիսային պատերազմը Ռուսաստանի և



Շվեդիայի միջև, որը տևեց 21 տարի։ Պոլտավայի նշանավոր ճակատամարտը (1709 թ.) վճռեց նաև Լատվիայի բախտը։ Նիշտադտի 1721 թվի դաշնագրով Լատվիան անցավ Ռուսաստանին։

Ցարական կառավարությունը վերականգնեց ազնվականության և հողային մագնատների առանձնաշնորհումներն ու իրավունքները։ Գյուղացիությունը հանձնվեց մերձբալթյան բարոնների կամայականությանը։

Լատվիայի արդյունաբերության աճումը կապված էր արդյունաբերության ընդհանուր զարգացման հետ ցարական Ռուսաստանում։ Դեռևս 1897 թվին Լատվիայում արձանագրված էր 1086 արդյունաբերական ձեռնարկություն, ուր զբաղված էին 54 հազար բանվոր։

Չնայած կապիտալիզմի բուռն աճմանը, Լատվիայում պահպանվել էին ֆեոդալական կարգերի մնացուկները կալվածատիրական խոշոր հողատիրության ձևով։ Կալվածատերերի ձեռքումն էր գտնվում հողի հիմնական մասսան։ Իսկ աշխատավոր գյուղացիությունը քայքայվում էր։ Լատվիական գյուղացիության հիմնական մասսան էին կազմում հողազուրկ բատ-

բակները, մանր արհեստանոցները, որոնք ծանրաբեռնված էին հարկերով։

Լատվիայի ժողովրդական մասսաների շարժումը կալվածատիրական և կապիտալիստական շահագործման դեմ, ազգային ճնշման դեմ, ավելի ու ավելի լայն թափ էր ստանում, հատկապես ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին։ 1905 թվականը Լատվիայի պատմության մեջ է մտել որպես լատվիական ժողովրդի պատմական մեծ մարտերի տարի։

Մինչև առաջին իմպերիալիստական պատերազմը Լատվիան Ռուսաստանի ամենաարդյունաբերական կենտրոններից մեկն էր։ Լատվիայի նավահանգիստներում այդ տարիներին առաջացան նավաշինական խոշոր գործարաններ և երկաթուղային տրանսպորտի սարքավորման գործարաններ, ամեն տեսակի մեխանիկական արհեստանոցներ։ Ռիգա, Լիբավա, Միտավա, Վինդավա քաղաքներում ստեղծվում են մի շարք խոշոր ձեռնարկություններ։ Այդպիսիք են «պրովոդնիկ» ռեզինի ֆաբրիկան (16 հազար բանվոր) և «Ֆենիկս» վագոնաշինական գործարանը, որտեղ աշխատում էին 15 հազար բանվոր, «Բեկկեր» մետաղալարի գործարանը և մի շարք ուրիշներ։



Արդյունաբերության աճումը պատճառ դարձավ քաղաքների աճման։ Ռիգայում պատերազմի նախօրյակին հաշվվում էր մոտ 500 հազար բնակիչ։ Լատվիայի քաղաքային ազգաբնակչությունը 1897 թվից մինչև 1913 թիվը 29,2 տոկոսից բարձրացավ 40,3%-ի։

Համաշխարհային պատերազմը խոշոր փոփոխություններ մտցրեց Լատվիայի էկոնոմիկայի մեջ։ Լատվիայի տերիտորիայում կատարված պատերազմական գործողությունների հետևանքով քարուքանդ եղան արդյունաբերությունն ու տրանսպորտը։

1917 թվի հոկտեմբերյան օրերին Լատվիայի այն մասում, որն օկուպացիայի ենթարկված չէր գերմանացիների կողմից, իշխանությունն անցավ Սովետների ձեռքը։

Լատվիական բուրժուազիան գործարք կնքեց ոտարերկրյա պետությունների հետ ռևոլյուցիայի հաղթանակը թույլ չտալու համար։ 1918 թվի փետրվարին գերմանական զորքերը գրավեցին Լատվիայի ամբողջ տերիտորիան։ Այսպիսով, Սովետների գործունեությունը Լատվիայում ընդհատվեց հենց սկզբից։

Գերմանիայում կատարված նոյեմբերյան ռևոլյուցիայից անմիջապես հետո Լատվիայում դարձյալ վերսկսվեց պայքարը Սովետների համար: Բայց լատվիական բուրժուազիան, սպասելով գերմանական զորքերի հեռացմանը, փորձ արեց ամրապնդելու իր իշխանությունը: Օկուպանտների օգնությամբ կազմվեց այսպես կոչված «Համալատվիական ազգային խորհուրդ», որը 1918 թվի նոյեմբերի 18-ին հռչակեց բուրժուական Լատվիայի անկախությունը:

Բուրժուազիայի դավաճանության հետևանքով մասսաների վրդովմունքը ծայրահեղ չափերի հասավ: 1918 թվի դեկտեմբերի 17-ին Լատվիայում ստեղծվեց ժամանակավոր սովետական կառավարություն, որը Լատվիան հայտարարեց անկախ սովետական ռեսպուբլիկա: Կազմակերպվեց Սովետական Լատվիայի Կարմիր բանակը: Լատվիական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Սովետների համագումարը 1919 թվի հունվարի 13-ին ընդունեց սովետական կոնստիտուցիան: Հունվարի վերջերին համարյա ամբողջ Լատվիան սովետական էր:



Օտարերկրյա իմպերիալիստների օգնությամբ բուրժուազիային հաջողվեց 1919 թվի մայիս ամսին տապալել դեռևս չամրապնդված երիտասարդ Սովետական ռեսպուբլիկան: Համարյա քսան երկու տարի տևեց սանձարձակ սպիտակ՝ տեռորը Լատվիայում: Բայց Լատվիայի աշխատավոր ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ չդադարեցրեց պայքարն իր ազատագրության համար: Լատվիական բանվորների և գյուղացիների պայքարը հաղթանակով պսակվեց:

***

Լատվիական ՍՍՌ-ն, որը հյուսիս-արևմուտքից սահմանակից է ՌՍՖՍՌ-ին, գրավում է 65·791 քառակուսի կիլոմետր տերիտորիա: Ներկայի Լատվիայի կազմի մեջ է մտել Ռուսաստանի նախկին Կուրլանդիական նահանգի մի մասը և Լիֆլանդիայի, Վիտեբսկի ու Պսկովի նահանգների առանձին ռայոնները:

Լատվիայի ազգաբնակչությունը 1·950 հազար հոգի է: Ազգաբնակչության հիմնական մասը կազմում են լատիշները և նրանց ցեղակից լատգալցիները — 76,5%, ռուսները կազմում են 11,5 %, հրեաները՝ 4,8% և այլն: Ազգաբնակչության մեծա-

մասնությունը— մոտ 69,5%-ը— զբաղված է գյուղատնտեսության և անտառային տնտեսության մեջ, 20%-ից ավելին՝ արդյունաբերության մեջ և տրանսպորտում:

Լատվիայի բնական աշխարհագրական պայմանները բարենպաստ են տնտեսական զարգացման համար: Բալթիկ ծովը Լատվիական ՍՍՌ-ի մոտ, բացառությամբ Ռիգայի ծոցի, համարյա չի սառչում, և նավագնացությունը հնարավոր է ամբողջ տարվա ընթացքում:

Լատվիան ունի տորֆի և հիդրոէներգիայի զգալի պաշարներ: Տորֆի պաշարները հասնում են 3 միլիարդ տոննայի: Բնական խոշորագույն հարստությունը հանդիսանում է անտառը, որը գրավում է երկրի ամբողջ տարածության մոտ 27%-ը:

Լատվիայի մայրաքաղաքը՝ Ռիգան (385 հազար բնակիչ) երկրի արդյունաբերական և կուլտուրական խոշոր կենտրոնն է, որը գտնվում է Ռիգայի ծոցի ափին: Ռիգայում կա չորս մեքենաշինական գործարան, նավաշինարան, տեքստիլ, սննդի, քիմիական և փայտամշակման շատ ձեռնարկություններ: Այստեղ կենտրոնացած է արդյունաբերական պրոլետարիատի երկու երրորդական և Լատվիայի ամբողջ ազգաբնակչու-



թյան մոտ մեկ վեցերորդական մասը:

Ռիգան Բալթիկ ծովի խոշորագույն նավահանգիստներից մեկն է: Քաղաքը տեղավորված է Արևմտյան Դվինայի երկու ափերին, Ռիգայի ծոցը թափվելու տեղից 15 կիլոմետր հեռու: Բալթիկ ծովից Ռիգա մտնելու համար հարկավոր է անցնել Ռիգայի ծոցով, որը ծովի հետ է միանում Իրբենի նեղուցով:

Համաշխարհային պատերազմի ժամանակ Իրբենը բազա էր ծառայում ռուսական Բալթիկական նավատորմի գրահանավերի համար: Ցերել հրվանդանում հաստատված ծանր հրետանու մարտկոցները և նեղուցում դրված ականային փակոցների սիստեմը ռուսական նավատորմին հնարավորություն տվին երկար ժամանակ Ռիգայի ծոցի սահմաններից հեռու պահել հակառակորդի գերակշռող ուժերը: Ռիգայի ծոցի կողմից Ռիգան պաշտպանված է Ուստ-Դվինսկ ծովային ամրոցով:

Ռիգան նաև երկաթուղային խոշոր հանգույց է: Այստեղ միանում են երկաթուղային հինգ մագիստրալներ: Ռիգան Լատվիայի կուլտուրական և քաղաքական կենտրոնն է: Այստեղ կա համալսարան, արվեստների ակադեմիա, կոնսերվատորիա:

Ըստ նշանակության երկրորդ քաղաքը Լատվիայում Լիեպայան (Լիբավան) է, 57 հազար բնակչությամբ: Լիեպայայի ձեռնարկություններում զբաղված է Լատվիայի բոլոր արդյունաբերական բանվորների մեկ տասներորդական մասը: Այստեղ են գտնվում երկրի մետաղաձուլման և նավանորոգման ձեռնարկությունները:

Լիեպայան նավահանգիստ է, ըստ որում ամենևին չսառչող, որը և կազմում է նրա խոշոր առավելությունը Ռիգայի հանդեպ:

Վենտսպիլսը (Վինդավան) գտնվում է Լիեպայայից 75 կիլոմետր դեպի հյուսիս և հանդիսանում է Լատվիայի խոշոր առևտրական նավահանգիստը: Վենտսպիլս նավահանգիստը լավ է սարքավորված, ունի նավաշինարան և նավանորոգման արհեստանոցներ, երկաթուղով միացած է Ռիգայի և Լատվիայի ամբողջ երկաթուղային ցանցի հետ: Վենտսպիլսը՝ որպես գերազանցապես տրանզիտային նավահանգստի՝ զարգացման հնարավորությունները բացառիկ մեծ են: Նրա կարևորագույն առավելությունն է հանդիսանում այն բանը, որ նա սառչում է միայն ամենադաժան ձմեռներին, այն էլ մի քանի օրով: Ձմեռը, երբ Ռիգայի ծոցը սառույցի տակ է լինում,



Վենտսպիլսով է անցնում բեռների հիմնական մասսան:

Մյուս արդյունաբերական կենտրոններից պետք է նշել Ելգավան (Միտավան), 34 հազար բնակչությամբ, քերամիկական, տեքստիլ և մետաղամշակման արդյունաբերության ձեռնարկություններով, և Դաուգավպիլսը (Դվինսկ), 45 հազար բնակչությամբ, երկաթուղային խոշոր արհեստանոցներով:

Լատվիան ագրարային երկիր է: Վարելահողերը կազմում են 2·187 հազար հեկտար, կամ ամբողջ տերիտորիայի 33,3%-ը: Մարգագետինների և արոտավայրերի բռնած տարածությունը կազմում է 1·657 հազար հեկտար, կամ ամբողջ տերիտորիայի 25,2%-ը: Հիմնական գյուղատնտեսական կուլտուրաներն են հաճարը, գարին, վարսակը: Մեծ տարածություններ են հատկացվում կարտոֆելին և շաքարի ճակնդեղին: Հացահատիկային կուլտուրաների բերքատվությամբ Լատվիան հետին տեղերից մեկն է գրավում Եվրոպայում:

Լատվիայում իշխանության գլուխը կանգնած պլուտոկրատական կլիկների քաղաքականությունը գյուղատնտեսության բնագավառում ուղղված էր Լատվիան իմպերիա-

լիստական տերությունների գյուղատնտեսական ավելաքարշը (придаток) դարձնելու կողմը: Կուլակային ագրարային «ռեֆորմը», որն անցկացվեց Լատվիայում հողազրկությունը լիկվիդացիայի ենթարկելու, գյուղացիության բոլոր խավերի հավասարությունն ապահովելու լոզունգի ներքո, չըբարելավեց գյուղացիության չքավորական խավերի դրությունը: Այն ուղղված էր ռեակցիոն ռեժիմի հիմնական հենարանի՝ կուլակության ամրապնդման կողմը:

Ուլմանիսի պլուտոկրատական կլիկի տիրապետության տարիներին կուլակությունը և խոշոր հողատերեր սեփականատերերը վայելում էին բոլոր առանձնաշնորհումները, հարյուրավոր միլիոն լատի նպաստ ստանալով երաշխավորված գների և էժան վարկի ձևով:

Լատվիական գյուղացիները տառապում էին հողազրկությունից և սակավահողությունից, քանի որ ամբողջ հողը, փոքր բացառությամբ, զավթել էին կալվածատերերը և «գորշ բարոնները» (կուլակները): Կուլակության ձեռքում էր գտնվում ամբողջ բանող և այլ տնտեսական անասունների համարյա երկու երրորդական մասը և գյուղատնտեսական ինվենտարի 85 %-ը:



Իսկ 30 հազար տնտեսություններ չունեին ո՛չ մի ձի, և մոտ 20 հազար տնտեսություն չունեին ո՛չ ձի, ո՛չ կով:

Մինչև առաջին իմպերիալիստական պատերազմը Լատվիան Ռուսաստանի խոշոր արդյունաբերական կենտրոնն էր: Այստեղ գտնվում էին այնպիսի արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք իրենց արտադրանքը մատակարարում էին ռուսական շուկաներին: Այժմ Լատվիան համարյա չունի խոշոր արդյունաբերություն: Լատվիական բուրժուազիայի տիրապետության տարիներին արդյունաբերությունն ընկավ: Լատվիական ժողովրդական տնտեսության ինդուստրիալ բազան փոքրացավ: Այդ է վկայում մետաղի արդյունաբերության դերի անկումը և սննդի արդյունաբերության առաջքաշումն առաջին տեղում: Արդյունաբերությունը հարմարվում էր նախ և առաջ երկրի սպառողական կարիքներին և տեղական գյուղատնտեսական հումքով աշխատելուն:

Արդյունաբերությունը կենտրոնացած է հիմնականում Ռիգայում: Հազարից ավելի բանվոր ունեցող առավել խոշոր ձեռնարկությունների թվին են պատկանում՝ «Վեֆ» էլեկտրոտեխնիկական գործարանը,

«Վեյրոգս» մետաղամշակման գործարանը, «Տոսմարե» մետաղալարի գործարանը և Ելգավայի վուշագործարանը:

Լատվիայի տնտեսական և քաղաքական կախումը իմպերիալիստական խոշոր պետություններից անդրադառնում էր ամբողջ ժողովրդական տնտեսության վրա: Քիմիական արդյունաբերության մեջ (1938 թվի տվյալներով) օտարերկրյա կապիտալի բաժինը կազմում էր 69%, տեքստիլ արդյունաբերության մեջ՝ 54%, թղթի արդյունաբերության մեջ՝ 58%, անտառամշակման արդյունաբերության մեջ՝ 60%:

Ռեակցիոն կառավարությունների տիրապետության երկար տարիների ընթացքում Լատվիայի աշխատավորները հեծում էին շահագործողների ճնշման տակ, ենթարկվում թալանի և ստրկացման, դատապարտվում աղքատացման և մահացման:

Հենց միայն Ռիգայում 1940 թվին հաշվվում էր մի քանի հազար գործազուրկ: «Դա վկայում է այն մասին,— ասում էր Լատվիայի ժողովրդական սեյմի նիստում դեպուտատ Ժ. Սպուրեն,— որ քիչ է խոսել գործազրկության մասին, այլ պետք է խոսել ավերածության և քաղցի մասին: Ֆաբրիկաների կես մասն աշխատում էր



կրճատ ժամերով, կրճատ աշխատանքային շաբաթով: Այդ էլ էր գործազրկություն: Աշխատանքի կենտրոնի, այդ ոստիկանական հիմնարկի օգնությամբ, բանվորներին բռնում և գյուղ էին քշում, որպեսզի գյուղական խոշոր տնտեսատերերին էժան աշխատանքային ուժ տանեն»:

Քաղցը և կարիքը Լատվիայի աշխատավորության միակ բաժինն էին: Առանց այդ էլ աղքատիկ աշխատավարձը տարեց-տարի խիստ կրճատվում էր: Արտաժամյա աշխատանքները սովորաբար չէին վարձատրվում: Սոցիալական ապահովագրության ծախսերը խիստ կրճատված էին: Լատվիայում լայն չափերով շահագործվում էր կանանց և երեխաների աշխատանքը, որպես առավել էժան աշխատանք:

Լատվիայի աշխատավորության նվիրական երազներն իրագործված են: Լատվիական բանվորները, գյուղացիները և աշխատավոր ինտելիգենցիան, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, Սովետական մեծ Միության ժողովուրդների եղբայրական համերաշխ ընտանիքում, սկսել են կառուցել նոր, երջանիկ կյանք:

# ԷՍՏՈՆԱԿԱՆ ՍՍՌ

## (Տեղեկանք)

*Էստոնիան գտնվում է Եվրոպայի հյուսիս-արևմտյան մասում: Հյուսիսում և արևմուտքում նրա ափերը ողողում են Բալթիկ ծովի ջրերը (Ֆիննական և Ռիգայի ծոցերը), արևելքում՝ Չուդի և Պսկովի լճերը: Էստոնիայի կազմի մեջ է մտնում Մոոնզունդի արխիպելագը, որն ունի ստրատեգիական մեծ նշանակություն, քանի որ գերիշխում է Ֆիննական և Ռիգայի ծոցերի մուտքերի վրա:*

*Իր շահավետ աշխարհագրական դիրքի շնորհիվ Էստոնիան հին ժամանակներից իր վրա է հրավիրել զանազան նվաճողների ուշադրությունը:*

*Շվեդիայից, Դանիայից և Գերմանիայից շատ անգամ են արշավանքներ ձեռնարկել ընդդեմ էստերի: Մինչև 1710 թիվը Էստոնիան մտնում էր Շվեդիայի կազմի մեջ:*



*Շվեդիայի և Ռուսաստանի միջև բռնկված Հյուսիսային պատերազմի հետևանքով Էստոնիան 1721 թվին Նիշտադտի դաշնագրով միացվեց Ռուսաստանին:*

*Առաջին իմպերիալիստական պատերազմի նախօրյակին Էստոնիան պատկանում էր Ռուսաստանի ամենից ավելի զարգացած արդյունաբերական ռայոնների թվին: Այստեղ գտնվում էին արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ— տեքստիլ, ռեզինի, թղթի և այլն: 1913 թվին Տալլինում (Ռևելում) կառուցվեց Ռուսաստանի խոշորագույն Ռուս-Բալթիական նավաշինական գործարանը, որտեղ աշխատում էին ավելի քան 5 հազար բանվոր, և Նոբլեսների երկրորդ նավաշինական գործարանը: Դեռ ավելի առաջ այդտեղ կառուցված էր «Դվիգատել» վագոնաշինական գործարանը, որտեղ աշխատում էին 2 հազար բանվոր:*

*Արդյունաբերության զարգացումն Էստոնիայում նպաստում էր բանվորական կազմակերպությունների ստեղծմանն ու ամրապնդմանը: Գյուղացիության ծանր դրությունն ուժեղացնում էր ռևոլյուցիոն շարժումը: Ցարիզմն անողոք կերպով ճնշում էր Էստոնիայի ռևոլյուցիոն բանվորների և գյուղացիների ելույթները:*

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի ազդեցության տակ Ռեվելի բանվորական և զինվորական դեպուտատների սովետը 1917 թվի հոկտեմբերյան օրերին իր ձեռքը վերցրեց իշխանությունը: Սովետական իշխանության հաղթանակը Ռեվելում, ապա և ամբողջ Էստոնիայում մեծ նշանակություն ունեցավ բոլշևիկների պայքարի ելքի համար Պետրոգրադում, անվտանգ դարձնելով վերջինիս թիկունքը:

Էստոնական բուրժուազիան, դիմելով կայսերական Գերմանիայի օգնությանը, 1918 թվի փետրվարի վերջում Ռեվելում ստեղծեց իր բուրժուական կառավարությունը:

Այն բանից հետո, երբ գերմանական զորքերը, Գերմանիայում միապետության փլուզման հետևանքով, ստիպված եղան հեռանալ Էստոնիայից, 1918 թվի նոյեմբերին հռչակվեց Էստոնիայի Սովետական Ռեսպուբլիկա (Էստոնական Աշխատանքային Կոմունա): Էստոնական Աշխատանքային Կոմունայի կազմվելուց անմիջապես հետո ՌՍՖՍՌ-ն հատուկ դեկրետով ճանաչեց Սովետական Էստոնիայի անկախությունը:



Բայց արևմտաեվրոպական իմպերիալիստական պետությունները բոլոր ջանքերը գործ դրին, որպեսզի տապալեն սովետական իշխանությունն Էստոնիայում: Էստոնական բուրժուազիան 20 միլիոն ֆիննական մարկի փոխառություն ստացավ. նրան օգնելու համար ուղարկվեց սպիտակ-ֆիննական երկու հազարանոց մի ջոկատ: Անգլիան Էստոնիայի ափերն ուղարկեց իր ռազմական նավատորմը և բլոկադայի ենթարկեց Ֆիննական ծոցը: Սովետական Էստոնիայի դեմ զենք վերցրին սպիտակ շվեդները և ռուսական սպիտակ գվարդիականները:

1919 թվի հունվարին Էստոնական Աշխատանքային Կոմունան, մեկուկես ամսվա գոյությունից հետո, ընկավ: 1919 թվի մայիսից Էստոնիան բուրժուական ռեսպուբլիկա էր:

Քաղաքացիական պատերազմի ժամանակ Անտանտայի պետությունները բազմիցս փորձեցին Էստոնիայի տերիտորիան որպես բազա օգտագործել Սովետական Ռուսաստանի դեմ ինտերվենցիա կատարելու համար:

Կարմիր բանակի կողմից Յուդենիչի բանդաների ջախջախումից հետո հաշտու-

թյան բանակցություններ սկսվեցին Էստոնիայի հետ: 1920 թվի փետրվարի 2-ին Տարտույում (Յուրյեվ) հաշտության պայմանագիր ստորագրվեց ՌՍՖՍՌ-ի և Էստոնիայի միջև: Սովետական Ռուսաստանը ճանաչեց Էստոնիայի անկախությունն ու ինքնուրույնությունը:

***

Էստոնական ՍՍՌ-ն, որը գտնվում է ՍՍՌՄ-ի հյուսիս-արևմուտքում, գրավում է 47.549 քառակուսի կիլոմետր տերիտորիա: Էստոնիայի ազգաբնակչությունը կազմում է 1.120 հազար հոգի:

Համաշխարհային պատերազմից հետո Էստոնիայի կազմի մեջ մտավ նախկին Էստլանդական նահանգը և Լիֆլանդական նահանգի հյուսիսային մասը, ինչպես նաև Պետերբուրգի և Պսկովի նահանգների հարևան գավառների մի մասը: Էստոնիայի կազմի մեջ էին մտնում 70 կղզիներ, որոնք գտնվում էին նրա ափերի մոտ Բալթիկ ծովում, Ռիգայի և Ֆիննական ծոցերում: Նրանցից ամենախոշորներն են՝ Սաարեմաա (Էզել), Խիյումաա (Դագո), Վորմսի (Վորմս), Մուխու (Մոոն):

Ազգային կազմով (տվյալները առ 1-ը



հունվարի 1938 թվի) ազգաբնակչությունը բաղկացած է էստոնացիներից— 88,2%, ռուսներից— 8,2, շվեդներից— 0,7, լատիշներից— 0,5, հրեաներից— 0,4, այլ ազգություններից— 2%: Էստոնիայի ազգաբնակչության հիմնական մասը (70%) զբաղված է գյուղատնտեսությամբ:

Էստոնիան լճերի երկիր է: Լճերը բռնում են 2200 քառակուսի կիլոմետրից ավելի տարածություն, կամ ամբողջ տերիտորիայի 5%-ը: Նավարկելի գետերն Էստոնիայում երեք են— Նարովա, Էմբախ, Պյարնու:

Կլիման Էստոնիայում բարեխառն-կոնտինենտալ է: Ֆիննական ծոցն ամբողջ արևելյան մասում սառչում է տարեկան չորս-հինգ ամիս, բայց Բալթիկ ծովն Էստոնիայի ափերի մոտ համարյա չի սառչում:

Անտառները բռնում են երկրի ամբողջ տերիտորիայի 21%-ը և մեծ նշանակություն ունեն ժողովրդական տնտեսության մեջ: Էստոնիայի հողերը կունձղա-մոխրային են: Հարավում հանդիպում են նույնիսկ կրա-կավային հողերի կղզիներ, որոնք հարուստ են կրով և շատ բարեբեր են: Բայց, դրան զուգընթաց, մեծ տարածու-

չի սառչում: Պալդիսկի նավահանգիստը խորն է և հարմար մեծ նավերի կանգառման համար:

Տարտուն (Յուրյեվը կամ Դերպտը) գտնվում է Էմբախ գետի վրա, ոչ հեռու այն տեղից, ուր նա թափվում է Պեյպուս (Չուդի) լիճը: Երկրի կուլտուրական կենտրոնն է. այս քաղաքում գտնվում է երկրի միակ հնագույն պետական համալսարանը: Տարտուի ազգաբնակչությունը 58 հազար է:

Նարվան (24 հազար բնակիչ) Էստոնիայի երրորդ խոշոր արդյունաբերական կենտրոնն է, տեքստիլ արդյունաբերության կենտրոնը: Այստեղ կառուցվել է նախառևոլյուցիոն Ռուսաստանի ամենախոշոր և տեխնիկայով ամենից ավելի առաջավոր բամբակագործական ֆաբրիկան՝ «Կրենգոլմի մանուֆակտուրան»: Կան մահուդագործական և վուշագործական ֆաբրիկաներ:

Նարվայի ռայոնումն են գտնվում Էստոնիայի խոշորագույն անտառային մասսիվները և փայտամշակման արդյունաբերության կարևորագույն ռայոնը, որն աշխատում է գլխավորապես էքսպորտի համար: Նարվայի ձեռնարկությունների համար



էներգիա է տալիս մոտակայքում գտնվող Նարվի ջրվեժը (90 հազար ձիու ուժ, որից օգտագործվում է միայն 13 հազարը):

Պյարնուն (21 հազար բնակիչ) Էստոնիայի միակ նավահանգիստն է Ռիգայի ծոցի ափին:

Էստոնիան գերազանցապես ագրարային երկիր է անասնապահական ուղղությամբ:

Մարգագետիններով և արոտավայրերով գրաղեցրած տարածությունը 1938 թվին կազմում էր 1.747 հազար հեկտար: Վարելահողերը բռնում էին 1.100 հազար հեկտար:

Էստոնական գյուղատնտեսության միակ ճյուղը՝ անասնապահությունը նշանակալի զարգացում է ստացել: 1939 թվին Էստոնիայում հաշվվում էր 705 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 218 հազար ձի, 695 հազար գլուխ մանր եղջերավոր անասուն և 442 հազար խոզ: Այդ բոլոր անասունները կենտրոնացած էին գլխավորապես կուլակության ձեռքում: 1938 թվին արտահանվել է 14,7 հազար տոննա յուղ, 3,6 հազար տոննա միս ու մսամթերք և 81,5 հազար գլուխ խոզ: Կաթնատնտեսությունը տալիս էր

գյուղատնտեսության ամբողջ եկամտի 45%-ը:

Նախկին էստոնական կառավարիչների ռեակցիոն, հակաժողովրդական քաղաքականության հետեվանքով չքավորական տնտեսությունները աղետալի դրության էին մատնվել: Քաղցն ու աղքատությունն էին իշխում գյուղում: Գյուղացիության լայն մասսաների դրությունը ցայտուն կերպով բնութագրում է էստոնական մի գյուղացու հետեվյալ նամակը, որն ուղարկված է «Ռահվա Հեել» թերթի խմբագրությանը.

«Մենք գյուղացիներս, բանկերի ստրուկներն ենք: 55 տարի մենք պարտավոր ենք վճարել բանկերին հողի համար, և միայն կես դար հետո մենք կարող ենք դառնալ այն հողի տերերը, որը ռռոգում ենք մեր արյուն-քրտինքով: Մեզ «տրված է» հողը, բայց կապիտալիստները վերցնում են մեր ամբողջ բերքը: Հացը հոսում է պարոնայք բանկիրների երախը, իսկ մենք ապրում ենք խավարի և աղքատության մեջ»:

Էստոնիայի արդյունաբերությունն առաջին իմպերիալիստական պատերազմից հետո անկման վիճակի հասավ. Նրա մեջ զբաղված էր ազգաբնակչության 13 %-ը:



Էստոնիայի արհեստական մեկուսացումը ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսությունից չափազանց վնասակար կերպով էր անդրադառնում նրա արտադրողական ուժերի զարգացման վրա: Սովետական Միության հետ տնտեսական կապերի բացակայությունը անդրադառնում էր նախ և առաջ այն ձեռնարկությունների վրա, որոնք սպասարկում էին նավաշինությանը, վագոնաշինությանը, տեքստիլ արդյունաբերությանը:

Մեքենաշինական արդյունաբերության համար ռուսական շուկան կորցնելը վճռական դեր խաղաց: Խոշոր ձեռնարկությունների մեծ մասն ստիպված եղավ համարյա կամ ամբողջապես դադարեցնել արտադրությունը— Ռուս-Բալթիական նավաշինական և մեխանիկական գործարանը, որտեղ համաշխարհային պատերազմի տարիներին աշխատում էին 11 հազար բանվոր, «Դվիգատել» գործարանը ավելի քան 2 հազար բանվորով, Իլմարինեի, Կրուլի մեքենաշինական գործարանը և, այլն:

Տալլինի նավահանգստային արհեստանոցները այս բոլոր տարիների ընթացքում աշխատում էին կես բեռնավորումով: Կրենգոլմի մանուֆակտուրայում, 14 հազար

բանվորի փոխարեն (մինչև պատերազմը), մինչև վերջին ժամանակներս աշխատում էին ընդամենը 2 հազար հոգի: Մահուղի արդյունաբերությունը նախապատերազմյան ժամանակվա համեմատությամբ վերջին տարիներս բեռնավորված էր 60 %-ով՝ վուշագործական արդյունաբերությունը՝ 50 տոկոսով:

Արդյունաբերական արտադրության կրճատմանը զուգընթաց, նկատվում էր արդյունաբերական ձեռնարկությունների մանրացում: 11 հազար ձեռնարկություններից միայն չորս ֆաբրիկա (երկու տեքստիլ, մեկ կահույքի և մեկ թղթի) ունեն յուրաքանչյուրը հազարից ավելի բանվոր:

Արդյունաբերության անկումը էստոնական բուրժուազիան օգտագործում էր բանվոր դասակարգի վրա հարձակում գործելու համար: Էստոնական պրոլետարիատի կենսական մակարդակը խիստ իջել էր: Ապրուստի արժեքն անընդհատ ավելանում էր: Ուժեղանում էր բանվորների և աշխատավորների շահագործումը: Աղետալի չափերով աճում էր գործազրկությունը: Աշխատանքի պայմաններն անտանելի էին դարձել: Այս ամենը պատճառ էր դառնում բանվորների բազմաթիվ վճռական ելույթ-



ների: Աշխատավորների ելույթները ճնշվում էին անսովոր անգթությամբ: Երկրում մոլեգնում էր արյունոտ տեռորը: Առանձնապես հալածվում էին բանվորները Սովետական Միության նկատմամբ իրենց համակրանքն արտահայտելու համար:

Աշխատավոր ժողովրդի համբերության բաժակը լցվեց: Սովետական մեծ Միության օգնությամբ էստոնական ժողովուրդը վռնդեց ատելի ռեակցիոն կլիկին: Պետական դուման, արտահայտելով ժողովրդի կամքը, Էստոնիայում հռչակեց սովետական իշխանություն: Երկրի բոլոր հարստությունները այսուհետև հանդիսանում են համաժողովրդական սեփականություն: Աշխատավոր ժողովուրդը դարձավ իր երկրի տերը:

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան Անդրկովկասի երեք ռեսպուբլիկաներից մեկն է: Հայաստանը բարձր լեռների, ուղղաձիգ ժայռերի, խոր ձորերի երկիր է: Հայաստանի հովիտները գտնվում են ծովի մակերևույթից 900 և ավելի մետր բարձրության վրա: Հովիտների շուրջը՝ սղմված են վառ արևով ողողված լեռներ: Երկրի հարավը գոտևորված է սրընթաց Արաքս գետով: Արաքսից դենը գտնվում է Թյուրքիան և Իրանը: Կապուտակ երկնակամարի վրա բարձր-բարձր, Արաքսի մյուս կողմում, պեծլին է տալիս Արարատի սպիտակափառ ճակատը: Ռեսպուբլիկայի կենտրոնում իր գագաթները դեպի երկինք է բարձրացնում հանգած հրաբուխ Արագածը (Ալագյազը):

Դաժան ու վեհ է Հայաստանի բնությու-



նը: Շատ քրտնաջան և համառ աշխատանք է պահանջվել անջրդի տարածությունները ոռոգելու, քարքարոտ լեռնալանջերին արգավանդ դաշտերի, բուրումնավետ մրգաստանների և խաղողի այգիների վերածելու համար: Աշխատասեր, տաղանդավոր հայ ժողովուրդը բազում դարերի ընթացքում է ստեղծել իր կուլտուրան և իր երկրի տնտեսությունը:

Իր պատմության ամբողջ ընթացքում հայ ժողովուրդը շատ է տառապանք քաշել, շատ է տեսել թշնամիների ամայացնող արշավանքներ, հալածանքներ, կեղեքումներ և ավերներ, որոնց վերջ դրեց միմիայն սովետական իշխանության հաղթանակը:

XIX դարից Հայաստանը բաժանվեց ցարական Ռուսաստանի ու սուլթանական Թյուրքիայի միջև և մշտական կռվախնձոր դարձավ նրանց ձեռքում: Երկու պետությունների այդ վեճերի զոհ էր դառնում շարունակ հայ ժողովուրդը: Թյուրքական Աբդուլ-Համիդ սուլթանը որոշեց «վերջ տալ հայկական հարցին, վերջ տալով հայերին»: Սկսվեցին հայ խաղաղ հողագործների և հովիվների սիստեմատիկ ջարդեր ու կոտորածներ: Հենց միայն երկու տարում (1894—1896) Տաճկահայաս-

տանում ավերվեց 8 հազար գյուղ, սպանվեցին ու խոշտանգվեցին 150 հազար հայեր։

Համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանում Թյուրքիայում կոտորվեցին և մեռան մոտ 600 հազար հայեր։ Հարյուր հազարավոր մարդիկ ստիպված եղան թողնել երկիրը։ Տաճկահայաստանն ամայացավ։

Զախազանց ծանր էր հայերի դրությունը նաև ռուսական ցարի իշխանության տակ։ Ցարիզմի քաղաքականությունը հստակ կերպով արտահայտեց ցարական արտաքին գործոց մինիստր Լոբանով—Ռոստովսկին, ցինիկաբար հայտարարելով, թե՝ «Մեզ հարկավոր է Հայաստանը՝ առանց հայերի»։

Վերջնական կործանման եզրին էր հասցըված հայ ժողովուրդը, բուրժուական հակահեղափոխական նացիոնալիստ դաշնակների օրով, որոնք զավթեցին իշխանությունը Հայաստանում 1918 թվին։ Դաշնակների իշխանությունը հաշակվեց Թյուրքիայի, Վրաստանի և Ադրբեջանի դեմ մղված արյունահեղ պատերազմներով։ Այդ պատերազմներն անհաշիվ զոհեր խլեցին հայ ժողովրդից։ Երկրի ներսում դաշնակ բանդիտները հաստատել էին դաժան տեռո-



րի ռեժիմ. Հայաստանն ադրբեջանցիներից «մաքրելու» ցուցանակի ներքո նրանք ազգամիջյան կոտորած կազմակերպեցին։ Պատերազմների, ջարդերի, սովի և համաճարակների հետևանքով կոտորվեց երկրի ազգաբնակչության մեկ երրորդ մասը։ Այդպիսիք էին դաշնակների տիրապետության արդյունքները։

Հայ ժողովուրդը համառորեն պայքարեց ցարական ինքնակալությունից, կապիտալիստների կեղեքումից, դաշնակների դավաճանություններից ազատագրվելու համար։ Հայ աշխատավորության ռևոլյուցիոն դասակարգային պայքարը ղեկավարել են մեծ Ստալինը և նրա օգնականները՝ հայ ժողովրդի արժանավոր զավակներ՝ Անաստաս Միկոյանը, Ստեփան Շահումյանը, Սուրեն Սպանդարյանը։

Դաշնակների դեմ ուղղված պայքարը վերջացավ աշխատավորության հաղթանակով։ Դաշնակների կառավարությունը տապալվեց։ 1920 թվի նոյեմբերի 29-ին Հայաստանում հաստատվեց սովետական իշխանություն։

Հայաստանի պատմության արյունով և արցունքով ողողված էջը շրջվեց։ Սկսվեց նոր, լուսավոր ու կենսուրախ մի ժամա-

նախաշրջան հայ ժողովրդի կյանքում, որին սովետական իշխանությունը բերավ խաղաղություն, ազգային վերածնություն, տնտեսական և կուլտուրական բարգավաճում:

Ընդմիշտ դադարեց ազգամիջյան կոտորածը: Զարհուրելի ջարդերի ժամանակ հրկիզված գյուղերի՝ ներկայումս խոտով պատված ավերակները միայն հիշեցնում են անցյալի մասին:

Երկրի վերածնությունը ցայտուն կերպով ցույց են տալիս նրա ազգաբնակչության աճման թվերը: 1920 թվին Հայաստանում կար 720 հազար բնակիչ, 1926 թվին՝ 881 հազար և 1939 թվին՝ 1.281,5 հազար: Ազգաբնակչության աճի տեմպով Հայաստանն առաջին տեղն է գրավել ՍՍՌՄ-ում :

Բոլշևիկները Հայաստանի դաժան և առաջին հայացքից աղքատ բնությանը ստիպեցին առատաձեռն կերպով ծառայելու սոցիալիզմին:

Երկրորդ հնգամյակում կրկնակի ավելացան պղնձահանքերի հայտնի պաշարները Ալավերդու ռայոնում (ռեսպուբլիկայի հյուսիսում) և Ղափանի ռայոնում՝ (հարավում): Այդ հանքաքարը վերամշակվում



են Ալավերդու վերակառուցված պղնձարդյունաբերական կոմբինատում: Մշակվում են Զանգեզուրի և Դարալագյազի բազմամետաղ հանքաքարերը: Վերջերս բացվեցին Փիրդոուդանի և Ագարակի պղնձի հարուստ հանքավայրերը: Սևանի ռայոնում գտնված են խրոմիտներ: Հայաստանն ավելի ու ավելի մեծ չափով դառնում է գունավոր ու հազվագյուտ մետաղների ռայոն:

Բազմազան են Հայաստանում շինանյութերի պաշարները: Հայաստանի քարերն ամբողջ Միության մեջ հռչակված են իրենց գեղեցկությամբ և շինարարական հատկություններով: Շատ արժեքավոր շինանյութեր են տալիս հանգած հրաբուխ Ալագյազի սառած լավաները ու մոխիրը: Լայն չափերով հայտնի է Արթիկ տուֆը՝ գեղեցիկ և ամուր մի քար, որը թեթև է փայտի նման և սղոցվում է հասարակ սղոցով: Միայն Հայաստանում չէ, որ տուֆից տներ են շինում: Այս վարդագույն քարից շինված խոշոր շենքեր կան նաև Մոսկվայում: Հայկական բազմերանգ մարմարով ու տուֆով են երեսապատված Մոսկվայի մետրոպոլիտենի կայարանները և բազմաթիվ գեղեցկագույն շենքեր

սիմմենտալների միջոցով: Առատ կաթը վերամշակելու համար կառուցված են 57 կաթնագործարաններ: Հայաստանում զարգացած է պանրագործական արդյունաբերությունը, որը տալիս է լավագույն սորտերի պանիրներ— շվեյցարական, հոլանդական, փափուկ, կավե ամաններում և տիկերում պահվող պանիրներ: Կալինինոյի շվեյցարական պանրի գործարանը խոշորագույնն է Միության մեջ:

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ կարևոր դեր է խաղում ոչխարաբուծությունը, որի բնագավառում նույնպես մեծ աշխատանք է տարվում տեսակների լավացման ուղղությամբ: Տեղական դմակավոր ոչխարները— բալբասը— մետիզացիայի են ենթարկվում ռամբույե և պրեկոս նրբամազ տեսակների միջոցով:

Հայաստանում աճեցնում են նաև կրակոտ ու տոկուն լեռնային ձիեր: Կոլխոզները մեծ եկամուտ են ստանում շերամապահությունից, մեղվաբուծությունից և ճագարաբուծությունից:

Հայաստանի սոցիալիստական գյուղատնտեսության հիանալի հաջողությունների մասին ցայտուն վկայություն է հանդիսանում Համամիութենական գյուղատնտե-



սական ցուցահանդեսի մասնակիցների թվի աճումը. 1940 թվին Հայաստանը 2,5 անգամ ավելի թեկնածու է առաջադրել, քան 1939 թվին: 1940 թվի ցուցահանդեսին մասնակցում են ոչ միայն առանձին առաջավորները, կոլխոզները, սովխոզները, ՄՏԿ-ները, այլև միմյանց հետ մրցակցող երկու շրջան ամբողջությամբ,— Ղամարլուն և Վաղարշապատը:

Հին հայկական գյուղն աչքի էր ընկնում իր բացառիկ աղքատությամբ: «Աղքատությունը երկաթյա չարիք է: Նրանից դուրս չես գա»,— ասում էին հայ չքավորները:

Հայ կոլխոզնիկները դեն են նետել աղքատության այդ հին չարիքը: Ահա, օրինակ, Ղամարլուի շրջանի Դարղալու գյուղը: Նախքան ռեվոլյուցիան այս գյուղի գյուղացիների կեսից ավելին ուներ յուրաքանչյուր տնտեսության մեկ դեսյատինից էլ պակաս հող, 17%-ը հողազուրկ էր, 75%-ից ավելին՝ կովազուրկ:

Ներկայումս Դարղալու գյուղի գյուղացիները միավորված են Փարիզյան Կոմունայի անվան կոլխոզում, որը Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակից է հանդիսանում: Կոլխոզն ունի խաղողի ընդարձակ այգիներ, բաղ-

Ունևոր և կուլտուրական կյանքով են ապրում կոլխոզնիկները: Շրջանում կան 10 միլիոնատեր կոլխոզներ: Վերջին 3 տարում աշխօրի միջին արժեքը շրջանում ավելի քան կրկնապատկվել է: Շրջանի կոլխոզնիկներն իրենց համար կառուցել են 2250 բնակելի տուն: Առաջ ամբողջ շրջանում կար 4 տարրական ծխական դպրոց: Այժմ 45 դպրոցներում սովորում են շրջանի բոլոր երեխաները: Գրագետ է ազգաբնակչության 97%-ը: Ամբողջ շրջանում առաջ միայն մեկ բժիշկ կար: Այժմ կա 9 բժիշկ և 68 միջին բուժպերսոնալ: Շրջանում կա 3 հիվանդանոց, 3 ծննդատուն: Շրջանի կոլխոզներում կա 14 ակումբ:

Վերակառուցված են Հայաստանի քաղաքները: Երևանը ծուռմիկ փողոցներով փոքր ու կեղտոտ քաղաքից դարձել է գեղեցիկ, բարեկարգ կուլտուրական արդյունաբերական քաղաք, 200 հազար բնակչությամբ:

Մեծ առաջ է գնացել կուլտուրական շինարարությունն ամբողջ ռեսպուբլիկայի մեջ: Նախքան ռեվոլյուցիան Հայաստանում չկար ոչ մի ԲՈՒՀ, ոչ մի թատրոն: Այժմ Հայաստանում կա 8 ԲՈՒՀ, 15 գիտա-հետազոտական ինստիտուտ, 20 թատ-



րոն: Հայ տաղանդավոր նկարիչներին, գրողներին, արտիստներին ճանաչում է ամբողջ սովետական երկիրը: Սովետական Հայաստանի բարձր զարգացած արվեստը ընդհանուրի գնահատականին արժանացավ Մոսկվայում հայկական արվեստի տասնօրյակի ժամանակ: Հայկական ժողովրդական էպոսի՝ «Սասունցի Դավիթ» մեծ ստեղծագործության հազարամյակը նշվեց որպես ողջ սովետական կուլտուրայի տոնը:

«Սասունցի Դավիթ»-ը վերջանում է նրանով, որ ժողովրդական հերոս Դավթի որդին՝ Մհերը, աշխարհի չարի դեմ պայքարելուց ուժասպառ, զայրացած ու անզորացած, քաշվում է քարանձավը: Նա հայտարարում է, թե այնտեղից դուրս կգա այն ժամանակ, երբ «աշխարհը ավերվի, մեկ էլ շինվի»:

Հասավ ժամանակը— և բոլշևիկները քանդեցին բռնության ու թշնամության հին աշխարհը, կառուցեցին եղբայրության ու երջանկության նոր աշխարհ: Ժողովրդի ստեղծարար ուժերը սեղմիչներից ազատվեցին: Ժողովուրդը— դյուցազուն Մհերը— դուրս եկավ դարավոր բանտից: Վառ փայլատակեց հայ ժողովրդի ազատագրված բազմակողմանի հանճարը, ժողովուրդ,վորը

թոթափել է իր ուսերից կեղեքիչներին և սովետական բոլոր ժողովուրդների հետ դաշնակցած, ռուսական մեծ ժողովրդի օգնությամբ կառուցում է նոր, սոցիալիստական հասարակություն իր երկրում:

Բայց սովետական երկրի լեռներից և գետերից դենը երկինքը պատված է իմպերիալիստական պատերազմի ծանր, փոթորկաբեր ամպերով: Հայ ժողովուրդը, ապրում է կապիտալիստական աշխարհի սահմանի վրա, պատրաստ է ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդների հետ եղբայրական դաշնկապած հետ մղել թշնամիների ամեն տեսակի դավերը: Հայ ժողովրդի զգացմունքներն ու մտքերը հիանալի արտահայտված են հայ պոետների (Ա. Իսահակյանի, Ն. Զարյանի, Գ. Սարյանի, Գ. Բորյանի և Ս. Կապուտիկյանի) ստանավորի մեջ, որը նվիրված է ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինին: Եթե վտանգ ծագի ընդդեմ մայր-հայրենիքի, ասված է այդ ստանավորի մեջ, ապա նույն պահին՝

«Մեր երջանիկ հայրենիքի սահմաններից անսասան,
Ստեպներից, անտառներից, տայգաներից ռուսական,
Հրազդանի և Ռիոնի արևազուն ափերից,



Կասպիական եզերքներից, Ուկրաինայի դաշտերից,
Բոստաններից, քաղաքներից, առուներից, լեռներից,
Կբարձրանան հազար-հազար մեր Դավիթները նորից,
Կբարձրանան՝ հեծած նժույգ Ջալալիներ թևավոր,
Թուր-կայծակին նրանց ձեռքին կշառաչի նորից նոր,
Նրա հզոր հարվածներից կխորտակվեն՝ խավարաչին,
Արյամբ զանգված գահերն ամեն և պալատները վերջին,
Մեր խուլ ցասման հրդեհներում կդառնան մուր ու մոխիր,
Աշխատանքի, երգի, սիրո թշնամիները զազիր,
Կանէանան նրանց կարգերը, օրենքներն արնախում,
Եվ կշողա դրոշը մեր շղթայազերծ աշխարհում»:

Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Սրբագրիչ՝ Հ. ԶՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ

ՎՖ 8626

Պատվեր՝ 817, տիրաժ՝ 7599

Հանձնված է արտադրության 3/IX 1940 թ.

Ստորագրված է տպագրության 11/IX 1940 թ.

---

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան